վիչի սպաննիչներէն մէկը՝ Ռագվիկոբոֆ 1925 Մարտ 6ին Սոֆիայի զինուորական ակումբին մէջ սպաննած էր համայնավար երեսփոխան Խարալամպի Սթայանոֆը։

## ՆՈՐ ԵՂԵՌՆԱՓՈՐՁԵՐ

Պելկրատէն կը հեռագրեն թէ Սկիւպի քաղաքապետարանին մէջ երեք ռումբեր գտնուած են։ Պայթուցիկները կարելի եղած է ժամանակին գտնել եւ անվտանգ տեղ փոխադրել։ Հեռագիրը կ'աւելցնէ թէ դաւադրութիւն մը սարքուած էր Մակեդոնացի յեղափոխականներու կողմէ, որոնք փորձեցին օդը հանել երկաթուղագիծը Սկիւպի մօտ։

Միւս կողմէ Աթէնքէն ալ կը հեռագրեն թէ Սորովիցայի մօտ երկու հելլէն անտառապահներ սպաննուած են պուլկար քոմիթաճիներու կողմէ։ Հելլէն իշխանութիւնները խիստ միջոցներ ձեռք կ'առնեն՝ քոմիթաճիներուն սահմանէն անցնիլը արգիլելու համար։ Հելլէն իշխանութիւնները կը վախնան որ քոմիթաճիները շատ խիստ միջոցներ ձեռք կ'առնեն Թրակիոյ մէջ։

Հելլէն կառավարութիւնը վստահելի աղբիւրներէ տեղեկացած է թէ Մակեդոնական կոմիտէն Վիեննայի մէջ կատարուած վերջին բանակցութիւններէն յետոյ յարած է Գ. Միջազգայինին։ Կ'ըսուի թէ Մոսկուա հրահանգ տուած է կոմիտէին կրկնապատկել յեղափոխական գործունէութիւնը։

## Մոսկուա եւ Էնկիւրի խռոված ?

Քովնոյի ճամբով Մոսկուայէն կը հաղորդեն թէ բաւական լուրջ դժուարութիւններ ծագած են Մոսկուայի եւ Էնկիւրիի միջեւ։ Այդ պատճառով ալ Չիչէրին հրահանգած է Էնկիւրիի խորհրդային դեսպան Սուրիցի Մոսկուա գալ՝ իրեն հետ տեսակցելու համար։

## Պոլշեւիկ լրտեսներ Լեթթոնիոյ մէջ

Ռիկայէն հեռագիր մը կ'ըսէ թէ Լեթթոնիոյ իշխանութիւնները ձերբակալած են 23 անձեր, մեծ մասամբ երկաթուղիի պաշտօնեաներ եւ սահմանապահներ, որոնք ամբաստանուած են թէ սովետներուն կը հաղորդէին մասնաւորապէս սահմանամերձ շրջանի վերաբերեալ զինուորական տեղեկութիւններ։

Ոստիկանութիւնը վերջերս Ռուսիայէն հասած Նախկին գաղտնի գործակալէ մը ստացած է վաւերաթուղթեր, որոնք կը հաստատեն խնդրոյ առարկայ անձերու յանցապարտութիւնը։ Յիշեալը տուած է նաեւ սովետներու հետ հաղորդակցութեան մէջ գտնուող անձերու ամբողջական ցանկը։

## Ռուսեր ձերբակալուած Ֆինլանտայի մէջ

«Թայմզ»ի թղթակիցը Հէլսինկֆորսէն կը հեռագրէ թէ Ֆինլանտայի ոստիկանութիւնը ձերբակալած է երկու տարագիր Ռուսեր՝ հարիւրապետ Լարինոֆ եւ Մոնոմախոֆ անուն աշխատաւոր մը, որոնք վերջերս հրաման ստացած էին Ֆինլանտայէն մեկնիլ, որովհետեւ ահաբեկչական գործեր կատարած էին Ռուսիոյ մէջ։

## Նոր միջադէպ մը Թուլոնի բանտին մէջ

Թուլոնէն կը հեռագրեն թէ Ուրբաթ օր ծովային բանտին մէջ նոր միջադէպ մը ծագած է։ Երբ կէսօրին բանտարկեալները իրենց ճաշը առնելու կ'երթային, Նախկին ցուցարար մը սկսաւ «Էնթէրնասիոնալ»ը հնչեցնել։ Երկու ընկերներ միացան իրեն, ու երեքը մէկ փորձեցին միւս բանտարկեալներն ալ իրենց կողմը շահիլ, բայց չյաջողեցան։ Ասոր վրայ մերժեցին ճաշի երթալ եւ ա՛յնքան բիրտ վերաբերուեցան, որ պէտք եղաւ զսպել զանոնք եւ ստիպողաբար տանիլ Մալպուսքէի ամրոցը։

## Հարաւ. Ատլանտեանը կտրուած

Առաջին անգամ ըլլալով Հարաւային Ատլանտեանը կտրուեցաւ մէկ թռիչքով։ Ֆրանսացի օդանաւորդներ Քոսթ եւ Լը Պրի, որոնք Նունկէսէր-Քոլի օդանաւով ուրբաթ առաւօտ ժամը 6.23ին Սէն-Լուիէն (Սէնէկալ) ճամբայ ելած էին, Պրազիլիոյ Նաթալ քաղաքը հասան ժամը 23.40ին (տեղական ժամով), այսպէս 18 ժամ 17 վայրկեանի մէջ կտրելով 3200 քիլոմէթր ճամբայ, միջին հաշուով ժամը 175 քիլոմէթր։

1922էն ի վեր վեց ապարդիւն փորձեր եղած էին Սպանիացիներու, Փորթուկալցիներու, Պրազիլիացիներու, Իտալացիներու եւ Ֆրանսացիներու կողմէ։ Քոսթի եւ Լը Պրիի այս կարեւոր յաղթանակը մեծ ուրախութեամբ կ'ողջունուի ֆրանս. մամուլին կողմէ։

## ՌՈՒԹ ԷԼՏԸՐ ՓԱՐԻԶ ՊԻՏԻ ԳԱՅ

Օր. Ռութ Էլտըր եւ Ճորճ Հէյլտմէն հոլանտական «Պարէնտրէխթ» շոգենաւէն անցան գերմանական «Սինկալէ» շոգենաւը, որ Շաբաթ օր Ասորեան կղզիները տարաւ զանոնք։ Երկու օդանաւորդները այսօր փորթուկալեան «Լիմա» շոգենաւով ճամբայ պիտի ելլեն երթալու համար Լիզպոնա, ուր պիտի հասնին Չորեքշաբթի օր։ Անկէ պիտի գան Փարիզ։ Հոս մեծ պատրաստութիւններ կը տեսնուին Լինտպէրկի պէս ընդունելու համար զանոնք։

Ռութ Էլտըր եւ Հէյլտմէն «Պարէնտրէխթ»ի վրայէն ղրկեցին իրենց առաջին զեկոյցը, ուր կ'ըսուի.

ճամբորդութիւնը հրաշալի եղաւ երեքշաբթի գիշեր եւ չորեքշաբթի ցերեկ։ ընդհակառակն, իրիկունը մտանք շատ գէշ օդով գօտի մը, ուր պէտք եղաւ թռչիլ 3500 մեդր բարձրէն։

չորեքշաբթի իրիկուն ժամը 9ին ահռելի փոթորիկի մը հանդիպեցանք, ամբողջ գիշերը մաքառեցանք։ երբեք այսքան գէշ օդի չէինք հանդիպած եւ ողջ ազատելու ամէն յոյս կորսնցուցած էինք։ Հինգշաբթի առաւօտ, երբ փոխած էինք մեր ուղղութիւնը, իւղի խողովակը բոլորովին աւրուեցաւ։ Այն ատեն ստիպուեցանք իջնել «պարէնտրէխթի» քով։ մեր օդանաւը, «Ամերիկացի Աղջիկ»ը պայթեցաւ եւ բոցերու ճարակ դարձաւ։ բան չկրցանք ազատել։ մեր ճամբորդութիւնը տեւած էր ճիշտ 35 ժամ։

Շոգենաւին նաւապետը Քուֆ կը հաղորդէ որ «Ամերիկացի աղջիկը» ամբողջ ութ ժամ մահու եւ կենաց պայքար մղած է բնութեան տարերքներուն դէմ։

Ռութ Էլտըրի ամուսինը Լայլ Ուօմըք անթելով շնորհաւորեց իր կինը։ Էլտըրի յանձնակատարը Թոմաս Մաք Քարտի կը բանակցի սինէմայի ընկերութեանց եւ ամէն տեսակ գործակալութեանց հետ՝ շահագործելու համար ամերիկացի աղջկան թռիչքը։

*** Գերման օդանաւորդներ Լօօզէ եւ Շթարքէ Լիզպոնայէն Ասորեան կղզիները հասան։ Իրենց հետ է նաեւ Վիեննացի պարուհի Լիլի Տիլէնը։



## ՑՈՒՑԱՏԵՍ

Հ. Յ. Դ. Ալֆորվիլի Սարգիս Մինասեան ենթակոմիտէի կուսակցական ժողովը այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը ճիշտ 3ին, երիտասարդաց ակումբին վերնայարկը, 138 Rue Etienne Dolet. կարեւոր օրակարգ, ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

Հ. Յ. Դ. Մարսէյլի «Քրիստափոր» ենթակոմիտէին ընդհ. ժողովը՝ վաղը երկուշաբթի ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին։

ԲԱՐՁՐ ՀԱՅՔԻ Հայրենակցական միութեան ժողովը այսօր կիրակի ժամը 2.30ին, 40 Rue de Belleville.



## ՍԱԿԱՐԱՆ
*15 Հոկտեմբեր 1927*

| ԴՐԱՄՆԵՐ | | Ֆր. | |
|---|---|---|---|
| Սթերլին, | L. St. | 124 | 08 |
| Տոլար, | Dollar | 25 | 47 |
| Մարք (ոսկի) | 100 Mark | 608 | 75 |
| Թրքական Թղթ. | L. Trq. | 13 | 65 |
| Թրք. ոսկի | » or | 110 | 40 |
| Մէճիտիէ | Médjidié | 9 | 95 |
| Լէվա 100 հատր | Léva | 15 | 75 |
| Տրախմի » | Drachme | 33 | 50 |
| Լիր » | » Lire | 139 | — |
| Պելժ. ֆրանք » | Belga | 354 | 75 |
| Զուից. » | Frc. Suisse | 492 | — |
| Լէյ 100 հատր | Ley | 15 | 85 |
| Ֆլորին | (Florin) | 1024 | 75 |

ԱՐԺԵԹՈՒՂԹ

| | | | |
|---|---|---|---|
| Եգ. Քր. Ֆօնսիէ I | Cr. Fonc. Eg. | 3450 | — |
| » II | » | 2040 | — |
| » III | » | 1700 | — |
| Ռումելի երկաթ. | Lots turcs | 175 | — |


IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris(10e)

Le Gérant : H. TEURNIER

